Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ

Սովետական Միության աշխատավորները հսկայական բերկրանքով ու խանդավառությամբ դիմավորեցին պարտիայի հերթական 19-րդ համագումար հրավիրելու մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը։ Բանվորները և ծառայողները, կոլտնտեսականները և աշխատավոր ինտելիգենցիան՝ բոլորը մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի համագումարի դիրեկտիվների նախագիծը։ Այդ պլանը մի նոր, խոշոր առաջընթաց քայլ է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին, այն պատմական խնդիրների կենսագործման ճանապարհին, որ առաջադրել է ընկեր Ստալինը 1946 թվականի փետրվարի 9-ին արտասանած ճառում։

ՍՍՌՄ-ում երկրի տնտեսական կյանքի զարգացումը որոշվում և ուղղություն է ըստանում ժողովրդական տնտեսության պետական պլանով։ Սոցիալիստական շինարարության գործում հսկայական դեր են խաղում

հեռանկարային հնգամյա պլանները։ Հնգամյա պլանների անհրաժեշտությունը բխում է կոմունիստական պարտիայի և Սովետական պետության պատմական խնդիրների բուն էությունից, կոմունիստական հասարակակարգ կառուցելու նրանց գլխավոր նպատակից։ Մեր երկրի զարգացման հնգամյա պլանները մշակվել և իրագործվել են մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ։

Նոր հնգամյակում ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման բազան լինելու է արդյունաբերությունը։ Ինդուստրացման սովետական փորձված քաղաքականությունը կհանդիսանա նոր հնգամյա պլանի կենսագործման կարևորագույն հիմքը։

Թողարկվող արդյունաբերական արտադրանքի քանակը նոր հնգամյակի վերջին տարում, 1950 թվականի համեմատությամբ, աճելու է 70 տոկոսով, արտադրանքի տարեկան միջին աճը կազմելու է մոտավորապես 12 տոկոս։

Ամբողջ ժողովրդական տնտեսության արագ զարգացման կարևորագույն պայմանը ծանր արդյունաբերության զարգացումն է, քանի որ դրանով իսկ հնարավորություն է



ստեղծվում ժողովրդական տնտեսությունը արտադրության միջոցներով ապահովելու, պայմաններ են ստեղծվում սոցիալիստական ընդլայնված վերարտադրության համար։ Այդ պատճառով էլ հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվների նախագծում արտադրության միջոցների արտադրության («Ա» խումբ) տարեկան աճը նախատեսվում է 13 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությանը («Բ» խումբ) մի փոքր պակաս՝ 11 տոկոսով։

Հինգերորդ հնգամյակում սահմանված է էլեկտրիֆիկացիայի զարգացման ավելի բարձր տեմպ՝ էլեկտրաէներգիայի բնագավառում ժողովրդական տնտեսության աճող պահանջները և բնակչության կենցաղային կարիքները բավարարելու համար։ Հնգամյակի ընթացքում էլեկտրակայանների ընդհանուր կարողությունն ավելանալու է կրկնակի չափով։ Գործարկվելիք հիդրոէլեկտրակայանների թվումն է կոմունիզմի մեծ կառուցումներից մեկը հանդիսացող Կույբիշևի հիդրոէլեկտրակայանը՝ 2.100 հազար կիլովատ կարողությամբ։

Հետագա տեխնիկական պրոգրեսի ապահովման գործում առաջատար դեր է պատկանում սովետական մեքենաշինությանը։

Նախատեսվում է հնգամյակի ընթացքում ավելացնել մեքենաշինության և մետաղամշակման ձեռնարկությունների արտադրանքը՝ մոտավորապես երկու անգամ: Ժողովրդական տնտեսության հագեցումը նորագույն մեքենաներով՝ հնարավորություն կտա ամենալայն չափերով մեքենայացնել աշխատանքը, բարձրացնել նրա տեխնիկական զինվածությունը և դրանով իսկ՝ մի նոր աստիճանի հասցնել աշխատանքի արտադրողականությունը:

Մեքենաշինության բնագավառում առանձնապես կարևոր խնդիր է հանդիսանալու էլեկտրակայանները, սև և գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները, նավթի վերամշակման և հեղուկ վառելանյութի ձեռնարկությունների շինարարությունը սարքավորումով լիովին ապահովելը:

Հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվները նախատեսում են արդյունաբերության նոր ճյուղերի զարգացումը: Այդպիսի ճյուղեր են՝ գազի արդյունաբերությունը, ածխի և թերթաքարերի վերամշակումը գազի համար, ածխի հարստացումն ու բրիկետավորումը, անտառանյութի հայթայթման ու փոխադրման մեքենայացված արդյունաբերու-



թյունը, խոշոր անտառաքիմիական արդյունաբերությունը և այլն:

Ծանր արդյունաբերության նոր վերելքը հուսալի հիմք է լինելու սպառման առարկաների արտադրությունն արագորեն ավելացնելու և բնակչության լայն մասսաների կարիքները բարելավելու համար: Թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի թողարկումն աճելու է առնվազն 70 տոկոսով:

Արդյունաբերության բնագավառում կատարվող կապիտալ ներդրումները հնգամյակի ընթացքում՝ 1946—1950 թվականների ցուցանիշների համեմատությամբ, ավելանալու են 2 անգամ:

Նոր հնգամյակում մեծ ուշադրություն է նվիրվում գյուղատնտեսության հետագա վերելքին: Գյուղատնտեսության բնագավառում այսուհետև ևս գլխավոր խնդիրն է՝ բարձրացնել բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ավելացնել հանրային անասունների գլխաքանակը՝ միաժամանակ զգալիորեն բարձրացնելով նրանց մթերատվությունը, ավելացնել հողագործությունից և անասնապահությունից ստացվող համախառն և ապրանքային արտադրանքը՝ կոլտնտեսությունների հանրային տնտեսու-

թյան հետագա ամրապնդման ու զարգացման, սովխոզների և ՄՏ կայանների աշխատանքի բարելավման միջոցով՝ առաջավոր տեխնիկան և ագրոկուլտուրան գյուղատնտեսության մեջ լայնորեն արմատավորելու հիման վրա։

Ցանքատարածությունները ընդարձակելու, արտադրության մեջ նոր, ավելի բերքատու տեսակներ արմատավորելու, գյուղատնտեսության մեքենայացման ու քիմիացման մակարդակն ուժեղ կերպով բարձրացնելու միջոցով նախատեսվում է հնգամյակի ընթացքում հացահատիկի արտադրանքն ավելացնել 40—50 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 55—65 տոկոսով, բամբակի հումքի բերքինը՝ 55—65 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 65—70 տոկոսով, խաղողինը՝ 55—60 տոկոսով, ծխախոտինը՝ 65—70 տոկոսով, խոտինը՝ 80—90 տոկոսով, պալարա-արմատապտուղներինը՝ 3—4 անգամ և այլն։

Անասունների գլխաքանակի ավելացման, ցեղի բարելավման և մթերատվության բարձրացման շնորհիվ հնգամյակում զգալի չափով կավելանա կաթնամթերքների արտադրությունը։ Նախատեսվում է տափաստանային և անտառատափաստանային շրջաննե-



րում անտառապատման աշխատանքների հետագա ծավալումը։

Հսկայական աշխատանք է կատարվելու մելիորացիայի և իրրիգացիայի ուղղությամբ։ Ոռոգելի հողերի տարածությունը հնգամյակում ավելանալու է 30—35 տոկոսով, ցամաքեցվող հողերինը՝ 40—45 տոկոսով։ Ոռոգման, ցամաքեցման և հողերը ջրովի դարձնելու ուղղությամբ առանձնապես մեծ աշխատանք է կատարվելու Կույբիշևի հիդրոէլեկտրակայանի, Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի, Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանի, Գլխավոր Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների գոտիներում։

Հնգամյակի ընթացքում կառուցվելու և շահագործման են հանձնվելու նոր երկաթուղիներ՝ մոտ 2,5 անգամ ավելի, քան 1946—1950 թվականներին։ Կարևորագույն երևույթ է Սիբիրում և Միջին Ասիայում կատարվելիք նոր շինարարությունների խնդիրը։

Ժողովրդական տնտեսության արագ զարգացման շնորհիվ անշեղորեն աճելու է մեր Հայրենիքի աշխատավորների բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Ազգային եկամտի աճ է նախատեսվում առնվազն 60 տոկոսով։ Հնգամյա պլանով նա-

խատեսվում է բանվորների և ծառայողների թիվը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացնել մոտավորապես 15 տոկոսով, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, հաշվի առնելով մանրածախ գների իջեցումը, բարձրացնել առնվազն 35 տոկոսով։ Գյուղատնտեսության զարգացումը և նրա արտադրանքի աճը հնարավորություն կտա բարձրացնել կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտները՝ առնվազն 40 տոկոսով։

Բնակչության բարեկեցության մակարդակը հավասարապես աճելու է նաև բնակարանային պայմանների տեսակետից։ 1951—1955 թվականների ընթացքում քաղաքներում և ավաններում միայն պետական շինարարության գծով կկառուցվեն և շահագործման կհանձնվեն նոր բնակելի տներ՝ 105 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ։ Լայն զարգացում է ստանալու նաև անհատական բնակարանային շինարարությունը։

Հինգերորդ հնգամյակում զգալիորեն ընդարձակվելու է գիտության և կուլտուրայի, առողջապահության և լուսավորության հիմնարկների ցանցը։ Մեծ ուշադրություն է նվիրվում ժողովրդական տնտեսության և



կուլտուրայի բոլոր ճյուղերի համար որակյալ կադրեր պատրաստելու գործին, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը և նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը։

Տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության նոր հնգամյա պլանով է՛լ ավելի է ընդարձակվելու մեր ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերությունը տեղական հումքային և էներգետիկ ռեսուրսների բազայի վրա։ Ընդարձակվելու է մետալուրգիական, մեքենաշինական, քիմիական արդյունաբերությունը և էներգետիկ բազան։ Բավական է նշել,որ 1951 թվականին մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ ներդրվեց մինչև 850 միլիոն ռուբլի, 4-րդ հնգամյակի վերջին տարվա՝ 1950 թվականի 670 միլիոն ռուբլու փոխարեն։ Նոր հնգամյակով զարգանալու է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Ծավալվելու է պայքարը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և հանրային անասունների մթերատվության բարձրացման, գյուղատնտեսական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման ու էլեկտրիֆիկացման և ռես-

պուբլիկան սեփական հաշվով ապահովելու ուղղությամբ։

Կյանքն ապացուցել է, որ միմիայն տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում է հնարավոր տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության հեռանկարային հնգամյա պլանները իրականացնել։

Ի հակադրություն կապիտալիստական սիստեմի, ուր արտադրության զարգացումը ենթարկված է կոնկուրենցիայի և կապիտալիստական մաքսիմալ շահույթի ապահովման սկզբունքին, տնտեսության սոցիալիստական սիստեմում, արտադրության զարգացումը ենթարկված է պլանային ղեկավարման և աշխատավորության նյութական ու կուլտուրական մակարդակը սիստեմատիկաբար բարձրացնելու սկզբունքին։

Ի հակադրություն կապիտալիստական սիստեմի, որտեղ ժողովրդական եկամտի բաշխումը կատարվում է հօգուտ շահագործող դասակարգերի և նրանց մակաբույծ ըսպասավորների հարստացման, տնտեսության սոցիալիստական սիստեմում ժողովրդական եկամտի բաշխումը կատարվում է հօգուտ բանվորների, կոլտնտեսային գյուղացիության և աշխատավոր ինտելիգենցիայի նյու-



թական դրության սիստեմատիկ բարձրացման, սոցիալիստական արտադրության ընդլայնման՝ քաղաքում և գյուղում։

Միմիայն տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում, որտեղ երկրի տերը բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությունն է, ստեղծված է անսահման հնարավորություն անընդհատ զարգացնելու ժողովրդական տնտեսությունը սոցիալիստական ընդլայնված վերարտադրությամբ։

Նոր հնգամյա պլանը ընդգրկում է հասարակական վերարտադրությունը՝ իր բոլոր կողմերով։ Նոր հնգամյա պլանը՝ ՍՍՌՄ-ում ընդլայնված վերարտադրության բոլշևիկյան ծրագիր է։

«Ներկա (հինգերորդ) հնգամյա պլանը,— նշված է հնգամյա պլանի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագծում,— նորից ամբողջ աշխարհի առջև ցուցադրում է սոցիալիզմի կենսական մեծ ուժը, կապիտալիստական սիստեմի հանդեպ տնտեսության սոցիալիստական սիստեմի արմատական առավելությունները։ Այդ հնգամյա պլանը հանդիսանում է տնտեսական և կուլտուրական խաղաղ շի-

նարարության պլան։ Նա կնպաստի Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական համագործակցության հետագա ամրապնդմանն ու ընդլայնմանը և տնտեսական հարաբերությունների զարգացմանը բոլոր այն երկրների հետ, որոնք ցանկանում են զարգացնել առևտուրը իրավահավասարության և փոխադարձ շահավետության սկզբունքներով»։

Սովետական Միության ժողովուրդները բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ պատվով կկատարեն Սովետական սոցիալիստական մեծ պետության ժողովրդական տնտեսության զարգացման ստալինյան նաև այս հոյակապ պլանը։

М. ՇԱՀԲԱԶՅԱՆ
(Տնտեսական գիտությունների թեկնածու)

---



## ՍԻՍՏԵՄԱՏԻԿԱԲԱՐ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏԵԽՆՈԼՈԳԻԱՆ

1952 թ. հոկտեմբերի 5-ին ՀամԿ(բ)Պ հերթական 19-րդ համագումար հրավիրելու մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը և ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագիծը աշխատանքային նոր, հզոր վերելք առաջացրին կաբելագործների մեջ, որոնք նոր լրացուցիչ պարտավորություններ ստանձնեցին ի պատիվ պարտիայի 19-րդ համագումարի։ Գործարանում սոցիալիստական մրցություն է ծավալվում, որի կազմակերպմանը ակտիվորեն մասնակցում են գործարանի ագիտատորները, ինժեներատեխնիկական անձնակազմը և ստախանովական բանվորները, որոնք ընդօրինակելով Մոսկվայի և Լենինգրադի կաբելի գործարանների առաջավորների աշխատանքի փորձը, պայքար են ծավալում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, տեխ-

նոլոգիական ռեժիմը կատարելագործելու, դազգահները մշտապես մաքուր վիճակում պահելու և արտադրության կուլտուրան սիստեմատիկորեն բարձրացնելու համար։

Գործարանի մեխանիկական նորոգման ցեխի կոլեկտիվը, օգտագործելով Լենինգրադի Կաբելի գործարանի կոլեկտիվի փորձը, հաստոցների գլանագույցներն սկսել է բրոնզի փոխարեն պատրաստել մամլած փայտանյութից։

Մինչև վերջին ժամանակներս պատրաստի արտադրանքը փաթաթվում էր հատուկ կոճերի վրա, որոնք հաստոցից հանելուց հետո նորից վերափաթաթվում էին հատուկ մեքենաների միջոցով։ Օգտագործելով Մոսկվայի Կաբելի գործարանի կոլեկտիվի փորձը, գործարանի նորարարները կոճերը փոխարինել են հատուկ կոներով, որոնց վրայից պատրաստի արտադրանքը միանգամից իջեցվում է։

Արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու ուղղությամբ մեծ նվաճումների է հասել գործարանի ձգման ցեխի կոլեկտիվը։ Ցեխի տեխնոլոգ ընկ. Բանդուրյանը նոր առաջարկություն մտցրեց փաթաթված լարերը թղթից և թելից մաքրելու համար։ Մինչև



ընկ. Բանդուրյանի առաջարկությունը պղնձյա լարերը թղթից և թելից մաքրում էին մեխանիկական եղանակով՝ մետաղյա խոզանակների օգնությամբ։ Ընկ. Բանդուրյանն առաջարկեց պղնձյա լարերը թղթից և թելից մաքրել ջերմային եղանակով՝ թթվածնազուրկ կամերայում։ Այդ նոր եղանակի գործադրումով 3—4 անգամ կրճատվում է պղնձյա լարերի մաքրման աշխատաժամանակը և իջնում է ինքնարժեքը։

Փականագործ Հ. Սարգսյանի նորամուծության շնորհիվ, որը փոխել է կտրող գործիքի կոնստրուկցիան, զգալիորեն հեշտացել է պղնձի ծայրերի կտրման գործողությունը և մեծ քանակությամբ պղինձ է տնտեսվում։ Նույն Սարգսյանը հեղինակն է պղինձ ձգող անցքերի նոր տիպի մեքենայի՝ որը կոչվում է Կաբելի գործարանի հղկող մեքենա. այդ մեքենան երկու անգամ ավելի արտադրողականություն ունի, քան մինչև այդ եղածը։

Կաբելագործները պատվով են կատարում արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու, հումքը խնայողաբար օգտագործելու, ինքնարժեքն իջեցնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար ծավալված սոցիալիստական մրցու-

թյամբ ստանձնած պարտավորությունները։ Գործարանի ձգման ցեխի կոլեկտիվը 1952 թ. 8 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 108 տոկոսով, լրիվ ապահովելով ասորտիմենտը։ Աշխատանքի միջին արտադրողականությունը կազմում է 115,8 տոկոս, տնտեսված է 2 տոննա պղինձ և 40.800 ռուբլու օժանդակ նյութեր։ Արտադրանքի ինքնարժեքն իջեցված է 3 տոկոսով՝ պլանով նախատեսված 2,5 տոկոսի դիմաց։

Գերազանց որակի արտադրանք թողարկելու համար ծավալված մրցության մեջ մտած բրիգադներից լավագույն արդյունքի են հասել ընկ. ընկ. Հ. Բաղարշուկյանի և Հ. Ազատյանի բրիգադները, որոնց «Գերազանց որակի բրիգադ»-ի կոչում են շնորհել էլեկտրաարդյունաբերության մինիստրության կոլեգիան և էլեկտրաարդյունաբերության աշխատողների պրոֆմիության կենտրոնական կոմիտեն։ Բրիգադի ստախանովականներ Հ. Ազատյանը, Հ. Բաղարշուկյանը, Ս. Այդինյանը, Ն. Բախչյանը և ուրիշներ կատարում են օրական 1,5—2 նորմա և յուրաքանչյուր ամսում տնտեսում են 3—4 հազար ռուբլու հիմնական և օժանդակ նյութեր։

Միջցեխային սոցիալիստական մրցության մեջ առաջին տեղը գրավել է ձգման ցեխի



կոլեկտիվը, որն իր ձեռքում է պահում գործարկոմի փոխանցիկ դրոշը։

Ձգման ցեխի կոլեկտիվը պարտավորվել է մինչև համագումարի բացման օրը կատարել հոկտեմբեր ամսվա երկու տասնօրյակի պլանը, միաժամանակ տնտեսել 0,5 տոննա պղինձ և 12.000 ռուբլու օժանդակ նյութեր։ Ընկ. Հ. Բաղարշուկյանի բրիգադը պարտավորվել է մինչև համագումարի բացման օրը կատարել 3 ամսվա նորմա և նա խոսքը գործի է վերածում։ Բրիգադի ստախանովականներ՝ Ս. Այդինյանը, Մ. Նալոյանը և ուրիշներ այժմ աշխատում են 2-րդ և 3-րդ ամսի հաշվին։

Ի պատիվ պարտիայի 19-րդ համագումարի կաբելագործները պարտավորվեցին ամբողջ կոլեկտիվով աշխատել ստախանովաբար, սիստեմատիկաբար կատարելագործել արտադրության տեխնոլոգիան, ավելացնել արտադրանքի թողարկումը, բարելավել նրա որակը։ Գործարանում լայն մրցություն է ծավալվել ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարը արտադրական նոր նվաճումներով դիմավորելու համար։

Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Երևանի Կաբելի գործարանի ձգման ցեխի պետ— ինժեներ

# ԱՌԱՋԱՎՈՐ ՃԱԿՆԴԵՂԱԳՈՐԾՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

Ախուրյանի շրջանի ճակնդեղագործ կոլտնտեսականների միջև սոցիալիստական լայն մրցություն է ծավալվում շաքարի ճակընդեղի բարձր բերք աճեցնելու համար։

Շաքարի ճակնդեղի բերքատվությունը բարձրացնելու, առաջավորների փորձը բոլոր կոլտնտեսականների սեփականությունը դարձնելու համար 1952 թվականի հունիսի սկզբներին տեղի ունեցավ ճակնդեղագործ կոլտնտեսականների, կոլտնտեսուհիների, գյուղատնտեսության մասնագետների և մեխանիզատորների շրջանային հավաք։ Առաջավոր ճակնդեղագործների շրջանային հավաքի մասնակիցները մտնելով սոցիալիստական մրցության մեջ, կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին և դիմում ընդունեցին՝ ուղղված Հայկական ՍՍՌ բոլոր ճակնդեղագործ կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, գյուղատնտեսության մասնագետներին և մեխանիզատորներին։ Նրանք պարտավորվեցին այս տարի շաքա-



րի ճակնդեղի ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 300 ցենտներ միջին բերք։ Դաշտավարական առանձին բրիգադներ և օղակներ ավելի բարձր պարտավորություններ ստանձնեցին։ Առափիի Կույբիշևի անվան կոլտնտեսության անվանի օղակավարուհիներ Լ. Սարգսյանը և Դ. Խաչատրյանը խոստացան իրենց մշակած ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 500 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Ախուրյանի շրջանի կոլտնտեսություններում դաշտավարական 120 բրիգադներ և օղակներ պարտավորություն են ստանձնել շաքարի ճակնդեղի բերքատվության պետական պլանը գերակատարել 100—150 ցենտներով։

Առաջավոր ճակնդեղագործների շրջանային հավաքում ստանձնած պարտավորությունները գերազանցորեն են կատարում Լ. Սարգսյանի և Դ. Խաչատրյանի օղակները։ Նրանց աճեցրած շաքարի ճակնդեղի ցանքադաշտերը աչքի են ընկնում ամբողջ շրջանում։

Գիտության և պրակտիկայի նվաճումները ճիշտ օգտագործելու շնորհիվ է, որ օղակավարուհիներ Լ. Սարգսյանը և Դ. Խաչատրյանը բարձր բերք են ստանում։ Նրանք

անցյալ տարի պլանով նախատեսված 270 ցենտների փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստացան 432,5 ցենտներ բերք։

— Շաքարի ճակնդեղի բարձր բերքի ըստացումը,— ասում է օղակավարուհի Լ. Սարգսյանը,— կախված է հողի նախացանքային բարձրորակ մշակումից, հողում անհրաժեշտ քանակությամբ սննդանյութեր կուտակելուց, ցանքը ժամանակին և խնամքով կատարելուց, ցանքադաշտերի մշակումից և ոռոգման աշխատանքների կազմակերպումից։

Այս բոլորն անխախտորեն է կատարվում անվանի օղակավարուհու աշխատանքի պրակտիկայում։ Աշնանը նրա օղակն իր հողամասի վրա շաղ է տալիս նախօրոք կուտակած գոմաղբը, որից հետո տրակտորով 28—30 սմ խորությամբ ցրտահերկ է կատարում։ Ձմռանը հողամասի մոտ կուտակում է տեղական պարարտանյութ, գարնանն այն շաղ է տալիս հողամասի վրա և կատարում նախացանքային կուլտիվացիա, որից հետո հարթեցնում է հողամասը, որպեսզի հողի մեջ ճակնդեղի սերմերը միահավասար խորությամբ ցանվեն և ոռոգումը արդյունավետ կատարվի։ Ցանքը կատարում են սեղմ ժամկետում։ Այս տարի Լ.



Սարգսյանի և Դ. Խաչատրյանի օղակները, ակադեմիկոս Գ. Բաբաջանյանի խորհրդով և ղեկավարությամբ, կատարեցին շաքարի ճակնդեղի երկշարք ցանք։ Երկշարք ցանքի առավելությունն այն է, որ յուրաքանչյուր հեկտարի վրա ապահովվում է 150—160 հազար արմատ։ Ցանքի ժամանակ Լ. Սարգսյանի օղակը յուրաքանչյուր հեկտարին տվել է քիմիական պարարտանյութ հետևյալ չափով. սուպերֆոսֆատ՝ 1,5 ցենտներ, ծծմբաթթվուտային ամոնիում՝ 1,5 ցենտներ և կալիական աղ՝ մեկ ցենտներ։ Լ. Սարգսյանի օղակը միջշարքային փխրեցումը կատարել է 2-ից 3, իսկ քաղհանն ու նոսրացումը՝ 4-ից 5 օրում։ Ագրոկանոնների համաձայն բույսերի միջև թողնվել է 14-ից 16 սմ հեռավորություն։ Օղակը քաղհանի և նոսրացման աշխատանքների հետ միաժամանակ կատարել է փխրեցում։ Հողուրագներով փխրեցում է կատարել 4, իսկ տրակտորային կուլտիվատորներով՝ 3 անգամ, մոտավորապես 14—16 սմ խորությամբ։ Լ. Սարգսյանը ճակնդեղի բույսերի արագ աճման կարևոր ագրոմիջոցառում է համարում բույսին սնուցում տալը։ Դրա համար նրա օղակը, նոսրացումն ավարտելուց հետո, հերթականությամբ 4 ան-

գամ սնուցում է տվել ցանքադաշտերին։ Օղակը հատուկ ուշադրություն է դարձնում ակոսային ոռոգմանը, որն ունի իր անհերքելի առավելությունները։ Ինչպես Լ. Սարգսյանի փորձն է ցույց տալիս, ակոսային ոռոգում կատարելիս 25-ից 30 տոկոսով տնտեսվում է ջուրը և հողում ապահովվում է միահավասար խոնավություն։

Այսպիսով, Լ. Սարգսյանի օղակը, օգտագործելով միչուրինյան ագրոբիոլոգիական գիտության նվաճումները, յուրացնելով գյուղատնտեսության առաջավորների փորձը, ազնիվ աշխատանքի միջոցով աճեցրել է շաքարի ճակնդեղի հարուստ բերք, ստեղծել է բոլոր անհրաժեշտ պայմանները՝ կատարելու և գերակատարելու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։

Լ. Սարգսյանը, որպես ագիտատոր, իր օղակում և բրիգադում մասսայականացնելով արտադրության առաջավորների փորձը, միաժամանակ քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին ընդգրկում է սոցիալիստական մրցության մեջ և իր անձնական օրինակով մոբիլիզացնում է բոլոր



կոլտնտեսականների ուժերը՝ օղակի, բրիգադի, կոլտնտեսության առջև դրված տնտեսական խնդիրները ժամանակին կատարելու համար։

Բոլշևիկների պարտիայի հերթական 19-րդ համագումար հրավիրելու մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը աշխատանքային նոր խանդավառություն է առաջացրել կոլտնտեսային գյուղի աշխատավորների մեջ։ Ի պատիվ բոլշևիկների պարտիայի 19-րդ համագումարի, առաջավոր ճակնդեղագործները լայն սոցիալիստական մրցություն են ծավալում իրենց ձեռքով աճեցրած շաքարի ճակնդեղի հարուստ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու, գյուղատնտեսական բոլոր աշխատանքները սեղմ ժամկետում և բարձր որակով կատարելու համար։

Լ. ԵՐԱՆՈՍՅԱՆ

---

## ՔԱՂԱՔԱԿԱՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ Ի ՍՊԱՍ Է ԴՐՎՈՒՄ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆԸ

*Երևանի Ստալինյան ռայոնի արտադրական ձեռնարկություններում աշխատանքային մեծ վերելք է սկսվել ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի կապակցությամբ։ Հազարավոր ագիտատորներ աշխատավորներին պարզաբանում են Սովետական Միության հետագա զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի դիրեկտիվների նախագիծը։ Ռայոնի արտադրական ձեռնարկությունները ի պատիվ պարտիայի 19-րդ համագումարի նոր պարտավորություններ են ստանձնել արտադրական պլանները բոլոր ցուցանիշներով ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։ Մրցության առաջին արդյունքները ցույց են տալիս, որ ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները հաջողությամբ են կատարում ստանձնած*



*պարտավորությունները։ Երևանի Ավտոդողերի գործարանի անվանի բրիգադիր Պ. Գոլոշչապովի բրիգադն ի պատիվ 19-րդ համագումարի կանգնելով ստախանովյան հերթափոխի, օգոստոս ամսվա պլանը կատարել է 170 տոկոսով, Ժ. Ավետիսյանի բրիգադը՝ 180 տոկոսով։ Երևանի Կոմպրեսորների գործարանը ՎԿ—30 տիպի կոմպրեսորների թողարկման օգոստոս ամսվա պլանը կատարել է 127 տոկոսով։ Պարտավորությունները հաջողությամբ են կատարում նաև էլեկտրամեքենաշինարարները, կարբիդագործները և այլ ձեռնարկությունների կոլեկտիվներ։*

*Ռայոնի արտադրական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները քաղաքական-մասսայական աշխատանքը ճիշտ զուգակցելով տնտեսական հարցերի հետ, ագիտատորների ուշադրությունը սրում են այն բանի վրա, որպեսզի քաղաքական ագիտացիան նպաստի աշխատավորների ստեղծագործական խանդավառությունը կրկնապատկելու, պետական պլանները որակական բարձր ցուցանիշներով կատարելու ու գերակատարելու գործին։*

Հազարավոր ագիտատորներ իրենց ագիտացիոն զրույցներում ցույց են տալիս թողարկվող արտադրանքի որակական ցուցանիշները բարձրացնելու, հումքը էլեկտրաէներգիան տնտեսելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ հաղթողների աշխատանքի լավագույն մեթոդները, այն դարձնելով մասսաների սեփականությունը, մոբիլիզացնում են աշխատավորներին՝ պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար։

Արձագանքելով 1952 թ. տնտեսական տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարելու վերաբերյալ Կիրովականի Մյասնիկյանի անվան Քիմիական գործարանի կոլեկտիվի կոչին, Ստալինյան ռայոնի արտադրական ձեռնարկությունները, հաշվի առնելով իրենց ներքին ռեզերվներն ու հնարավորությունները, պարտավորություն են ստանձնել՝ ժամկետից շուտ ապահովելու պետական պլանների կատարումը։ Ռայոնի արդյունաբերության յոթ ամիսների պլ-



լանը կատարված է 101,5 տոկոսով։ Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել ինքնարժեքի իջեցման, խնայողությունների և արտապլանային կուտակումների ուղղությամբ։ Ստանձնած պարտավորությունները հաջողությամբ են կատարում Պոլիվինիլացետատ, Ավտոդետալ, Խրոմպիկի, Շինանյութերի գործարանների և շատ այլ ձեռնարկությունների կոլեկտիվները։ Պլանների հաջող կատարմանը մեծ չափով նպաստում է ագիտատորների միջոցով գործարաններում ծավալված մասսայական-քաղաքական աշխատանքը։ Այդ տեսակետից չափազանց ուսանելի է Երևանի Խրոմպիկի գործարանի ագիտատոր ընկ. Սերգեյ Սոֆյանի աշխատանքի փորձը։ Ընկ. Սոֆյանը մեծ սիրով ու բարեխղճությամբ է կատարում ագիտատորի իր պարտականությունները։ Յուրաքանչյուր հերթական զրույցին նա նախապատրաստվում է բազմակողմանիորեն, օգտագործում է հանձնարարված նյութերն ու գրականությունը։ Նրա զրույցները կարճ են, սակայն բովանդակալից ու պատկերավոր։ Ագիտատոր Սոֆյանը իր հերթափոխությունում ամենից առաջ հանդիսանում է սոցիալիստական մրցության կազմակերպիչը և նրա

նախաձեռնողը: Նա մոտիկից ճանաչում է հերթափոխության բոլոր բանվորներին, գիտե նրանցից յուրաքանչյուրի աշխատանքի լավ ու վատ կողմերը, յուրաքանչյուր տեղամասի ցավոտ հարցերը: Խոսելով հումքի և էլեկտրաէներգիայի խնայողության մասին, նա հերթափոխության բանվորներին մանրամասն բացատրում է, թե ինչ ձևով պետք է աշխատել բարձր արդյունքների հասնելու համար:

Հետաքրքիր ու բովանդակալից են անցնում Սոֆյանի զրույցները թողարկվող արտադրանքի որակի բարձրացման մասին: Նա մանրամասն կանգ է առնում խոտան արտադրանք ստանալու պատճառների վրա, բանվորների ուշադրությունը հրավիրում պայքարելու բարձրորակ արտադրանքի համար: Այն հերթափոխությունը, որտեղ աշխատում է Սոֆյանը, իր արտադրական պլանները կատարում է 220—230 տոկոսով և տալիս է միայն գերազանց որակի արտադրանք:

Հերթափոխության բանվորները, ի պատիվ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի, կանգնել են ստախանովյան հերթափոխի և պարտավորություններ են ստանձնել համա-



գումարի բացումը նշել տասը ամսվա պլանը 250 տոկոսով կատարած:

Ընկ. Սոֆյանի աշխատանքի փորձը գործարանի պարտիական բյուրոն հաղորդեց մյուս հերթափոխությունների և ցեխերի ագիտատորներին, որոնք նույնպես հանդես են գալիս որպես ցեխերի արտադրական պլանների կատարման համար ծավալվող սոցիալիստական մրցության նախաձեռնողներ: Գործարանը 1952 թվականի 7 ամսվա արտադրական պլանները կատարեց 139,3 տոկոսով, արժանանալով Համամիութենական 2-րդ մրցանակի: Ագիտացիոն-մասսայական աշխատանքների կազմակերպման գործում լավագույն փորձ են ձեռք բերել նաև կոմպրեսորների գործարանի ագիտատորները: Ագիտ կոլեկտիվի ղեկավար ընկ. Խ. Նազարյանը յուրաքանչյուր ագիտատորին օգնում է պարզելու տվյալ ցեխի, հերթափոխության, տեղամասի աշխատանքների վիճակը: Այսպես, օրինակ, հավաքման ցեխի ագիտատոր Ղազարյանը դժվարանում էր պարզել, թե որն է ցեխում թողարկվող արտադրանքի ցածր որակի պատճառը, մինչդեռ անհրաժեշտ էր հերթական զրույցում

խոսել այդ մասին և մոբիլիզացնել ցեխի կոլեկտիվին՝ շուտափույթ վերացնելու որակի հարցում տեղ գտած թերությունները: Այստեղ ագիտատորին օգնության հասավ ագիտկոլեկտիվի ղեկավարը, որը ագիտատորի և ցեխի ինժեներա-տեխնիկական անձնակազմի հետ միասին բացահայտեց վատորակ արտադրանքի առաջացման պատճառները և ագիտատորին հնարավորություն տվեց իր զրույցում մանրամասն խոսելու այդ պատճառների մասին: Ագիտատոր Ղազարյանը հանդես եկավ նաև իբրև որակի համար ծավալվող սոցիալիստական մրցության կազմակերպիչ և լավագույն բանվորների կողմից օգնություն կազմակերպելով ետ մնացող ընկերներին, հասավ այն բանին, որ ցեխն սկսեց թողարկել բարձրորակ արտադրանք:

Ստալինյան ռայոնի ագիտկոլեկտիվները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ի պատիվ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի, պետք է է՛լ ավելի ուժեղացնեն մասսայական-քաղաքական աշխատանքը աշխատավորության մեջ, մոբիլիզացնեն նրանց ուժերը՝ ստանձնած պարտավորությունները ժամանակին կատարելու համար:

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

---

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿԱԼԵՐՈՒՄ

Հացահատիկային կուլտուրաների մասսայական բերքահավաքի առաջին օրերից սկսած Բասարգեչարի շրջանի Մեծ Մազրա գյուղի կոլտնտեսության դաշտավարական բրիգադների կալերում աշխատում են մեծ թվով կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ:

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը դաշտավարական բրիգադների կալերին ամրացրել է քաղաքականապես առավել պատրաստված ու փորձված ագիտատորների, որոնք աչքի են ընկնում իրենց լավագույն աշխատանքով:

Կենդանի ու գրավիչ զրույցների և ընթերցանության միջոցով ագիտատորները կոլտնտեսականներին բացատրում են պարտիայի ու կառավարության որոշումները, սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական հաղթանակները, միջազգային դրության հարցերը և գյուղատնտեսության առաջավորների հարուստ փորձը: Ագիտատորները այժմ հատուկ ուշադրություն են դարձնում ՀամԿ(բ)Պ

19-րդ համագումարում քննարկվելիք նյութերի մասսայականացման վրա, որը քաղաքական ու արտադրական չտեսնված ակտիվություն է առաջացնում կոլտնտեսականների մեջ։ Այսպես, դաշտավարական № 5 բրիգադայի ագիտատոր Հ. Մանուկյանը կալում աշխատող կոլտնտեսականների համար ընթերցեց ու բացատրեց ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի դիրեկտիվների նախագիծը 1951—1955 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ։ Կոլտնտեսականները ուշի ուշով լսեցին ագիտատորին և պարզ պատկերացում կազմեցին Սովետական Միության նոր հնգամյակի հոյակապ խնդիրների մասին։

Ոգևորված 1951—1955 թվականների հնգամյակում նախատեսված խնդիրներով, կալում աշխատող բոլոր կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները մտան սոցիալիստական մրցության մեջ և պարտավորվեցին բոլորից շուտ ավարտել կալսումը։ Ստանձնած այդ պարտավորության կատարումը ագիտատոր Մանուկյանը պահեց կոլտնտեսականների ուշադրության կենտրոնում և խլյիշովկայի հատուկ համար լույս ընծայեց՝ պարտիայի 19-րդ համագումարը արտադրական նորանոր հաջողություններով դիմավորելու



համար։ Սա տվեց այն արդյունքը, որ № 5 բրիգադն սկսեց կալսման պլանը կատարել 125—140 տոկոսով, և վերջին վեց օրվա ընթացքում պահեստ հանձնեց 1000 ցենտներ ցորեն։

№ 4 բրիգադի կալի ագիտատոր ընկ. Ա. Մանուկյանը, որն ունի ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ, նոր հնգամյակի խնդիրները մասսայականացնելիս այն վարպետորեն կապեց կոլտնտեսության և բրիգադի առջև դրված ներկա կոնկրետ խնդիրների հաջող կատարման հետ։

— Որպեսզի նոր հնգամյա պլանով նախատեսված խնդիրները հաջողությամբ կատարվեն,— ասաց ագիտատորը,— մենք պետք է արագացնենք առատ բերքի կալսումը, չտանք ոչ մի կիլոգրամ հացահատիկի կորուստ և օգնենք կոլտնտեսությանը՝ առաջին պատվիրանը պատվով կատարելու։ Դրա համար անհրաժեշտ է կալսիչ մեքենան աշխատեցնել լրիվ ծանրաբեռնվածությամբ, օրական կալսել 20—25 տոննա հացահատիկ և այն մաքուր վիճակում հանձնել պահեստ։

Կոլտնտեսականները սիրով ընդունեցին ագիտատորի առաջարկը և նոր թափով գործի

անցան։ Նրանք պլանով սահմանված 82 տոննայի փոխարեն յոթ օրում կալսեցին 150 տոննա ցորեն և այն մաքուր վիճակում հանձնեցին պահեստ։

Ինչպես № 4 և № 5 բրիգադների, այնպես էլ մյուս բրիգադների ագիտատորները կալերում հատուկ զրույցներ են անցկացրել նվիրված հացամթերումների պլանի ժամկետից շուտ կատարմանը։

Հացամթերման պլանը ժամկետից շուտ կատարելու համար աչքի ընկնող տեղերում փակցված են այսպիսի լոզունգներ՝ «Պատվով կատարենք առաջին պատվիրանը», «Որքան շատ հաց տանք հարազատ Սովետական պետությանը, այնքան կամրացնենք խաղաղության գործը», «Ամեն օր մասնակցենք հացամթերումներին»։ Այս մոբիլիզացնող լոզունգների հետ գործի են դրված տեմպերի տախտակը, խլիշովկաները և բոլշևիկյան ագիտացիայի մյուս ձևերը, որոնք մեծ չափով օգնում են հացամթերումների արագացմանը։ Դրա լավագույն ապացույցն այն է, որ կոլտնտեսությունը ամեն օր մասնակցում է հացամթերումներին և պետությանը հանձնում է բարձրորակ հացահատիկ։

Ագիտկոլեկտիվի նախաձեռնությամբ



պատրաստված է շարժական մի տախտակ, ուր ամեն օր հրապարակվում են կալման գործում դաշտավարական բրիգադների կատարած աշխատանքի արդյունքները։ Դրա միջոցով կալում աշխատող կոլտնտեսականները տեղեկանում են, թե տվյալ բրիգադն անցած օրը քանի տոկոսով է կատարել կալման պլանը և որքան հացահատիկ է հանձնել պահեստ։ Այս եղանակով պարզ երևում է առաջավոր բրիգադը, որի աշխատանքի փորձը ագիտատորները մասսայականացնում են մյուս բրիգադների կալերում աշխատող կոլտնտեսականների շրջանում։ Օրինակ, № 4 բրիգադի կոլտնտեսականները աշխատանքի են գալիս բոլորից շուտ, կալսիչ մեքենան աշխատեցնում են լրիվ բեռնվածությամբ, կալսված հացահատիկը խսկույն փռում են չորանոցում, մաքրում և ապա հանձնում պահեստ։ Այստեղ կատարված է աշխատանքի բաժանում և ամեն մի կոլտնտեսական նախօրոք գիտի իր անելիքը և օրվա պլանը։ Պլանը գերակատարելու համար բրիգադի ագիտատոր Մանուկյանը ամեն օր, աշխատանքի ընդմիջման ժամերին, զրույցներ է անցկացնում կոլտնտեսականների հետ, նրանց համար օրվա թերթերից հոդվածներ ու ինֆորմացիաներ է

կարգում կոմունիզմի մեծ կառուցումներում, արդյունաբերական ձեռնարկություններում և կոլտնտեսություններում սովետական մարդկանց կատարած հերոսական աշխատանքի մասին։ Նա փաստերով ցույց է տալիս, թե ինչպես սովետական մարդիկ ի պատիվ Համ. Կ(բ)Պ 19-րդ համագումարի մասսայաբար կանգնում են ստախանովյան հերթափոխության և օրական կատարում 1,5—2 արտադրական նորմա։

Ագիտատորի զրույցները ոգևորեցին կոլտնտեսականներին։ Նրանք ի պատիվ պարտիայի 19-րդ համագումարի պարտավորվեցին ստախանովաբար աշխատել և օրվա կալսման պլանը սկսեցին կատարել 145—165 տոկոսով, առաջ անցնելով մյուս բրիգադներից։

Ագիտատոր Մանուկյանի աշխատանքի փորձը քննարկվեց ագիտկոլեկտիվում, որը տվեց իր դրական արդյունքը։ Այժմ մյուս բրիգադների ագիտատորները նրա օրինակով կալերում աշխատող կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների շրջանում մասսայական-բացատրական լայն աշխատանք են կատարում կալսումն արագացնելու համար։



Կալսման գործում վճռական դեր են խաղում գյուղատնտեսության մեխանիզատորները՝ կալսիչավարներն ու տրակտորիստները, որոնց շրջանում ագիտատորները նույնպես սիստեմատիկ աշխատանք են կատարում և նրանց ոգևորում մեքենաների արտադրողականությունը բարձրացնելու, վառելանյութը տնտեսելու և բերքի կորուստ չտալու համար։

Մեծ Մազրայի կոլտնտեսությունը Բասարգեչարի շրջանի խոշոր կոլտնտեսություններից մեկն է, որն այս տարի հավաքում է 1.650 հեկտար հացահատիկային կուլտուրաների առատ բերք։ Բերքի ժամանակին կալսումը բերքահավաքի ամենակարևոր, ամենավճռական ու անհետաձգելի աշխատանքներից մեկն է։ Այդ հանգամանքը հաշվի առնելով, կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը բոլշևիկյան ագիտացիան ամբողջապես իսպաս է դրել հացահատիկի կալսումը, չորացումն ու մաքրումը ավարտելու սեղմ ժամկետում։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

---

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ՖԵՐՄԱՅՈՒՄ

*ՀամԿ(բ) պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հընգամյա պլանի վերաբերյալ նախատեսում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելք, աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա մեծ աճ։ Նոր հնգամյա պլանում գյուղատնտեսության ասպարեզում գլխավոր խնդիրը մնում է գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացումը, հանրային անասունների գլխաքանակի հետագա ավելացումը՝ նրա մթերատվության միաժամանակյա զգալի աճի հետ մեկտեղ, հողագործության ու անասնաբուծության համախառն և ապրանքային արտադրանքի ավելացումը։*

*Գյուղատնտեսական արտադրության նախատեսվող աճն ապահովելու համար հընգամյակի ընթացքում գյուղատնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումների ծա-*



*վալը սահմանվում է մոտավորապես 2,1 անգամ ավելի, քան 4-րդ հնգամյակում։*

*Նոր հնգամյա պլանով նախատեսվում է անասնապահության մթերքների քանակի ավելացում. մսինը և ճարպինը՝ 80—90 տոկոսով, կաթինը՝ 45—50 տոկոսով, բրդինը՝ մոտավորապես 2—2,5 անգամ։ Ամբողջ գյուղատնտեսության մեջ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կավելացվի 18—20 տոկոսով, ոչխարներինը՝ 60—62 տոկոսով։*

*Անասնապահության զարգացման հետագա խնդիրների պատվով ու ժամանակին կատարումը մեծապես կախված է անասնապահության բնագավառում աշխատողների մեջ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքներից։*

*Անասնապահության բնագավառում աշխատող ագիտատորների խնդիրն է՝ քաղաքական-մասսայական լայն ագիտացիա ծավալել կոլտնտեսային և սովխոզային աշխատողների մեջ, պարզաբանել պարտիայի դիրեկտիվները նոր հնգամյա պլանի վերաբերյալ, յուրաքանչյուրի գիտակցությանը հասցնել այդ պատմական դիրեկտիվների իմաստն ու նշանակությունը, մոբիլիզացնել նրանց ուժերը՝ կատարելու և գերակատարելու նոր*

հնգամյա պլանը, պայքարելու անասնապահության զարգացման անշեղ վերելքի, անասունների գլխաքանակի ավելացման և մթերատվության է՛լ ավելի բարձրացման համար։

Ագիտատորների առաջ ծառացած խնդիրները պատվով է կատարում Ստեփանավանի ընկեր Ստալինի անվան խոշորացված կոլտնտեսության պարտիական կազմակերպության 13 հոգուց բաղկացած ագիտ-կոլեկտիվը։

Ագիտատորները կոլտնտեսության ֆերմաներում, բրիգադներում և առանձին տեղամասերում մասսայականացնելով պարտիայի դիրեկտիվների նախագիծը նոր հնգամյա պլանի մասին, պարզաբանում են կոլտնտեսականների առջև դրված պրակտիկ խնդիրները, մոբիլիզացնելով նրանց ուժերը նոր հնգամյակում առաջադրվող խնդիրները անթերի կատարելու համար։ Ագիտացիոն լավագույն աշխատանքի հետ միասին, ագիտատորներից շատերը միաժամանակ անձնական օրինակ են ցույց տալիս անասունների խնամքն ու կերակրումը լավ կազմակերպելու գործում։

Այդպիսի առաջավոր ագիտատորներից է



անասնապահական ֆերմայի հորթապահ, կոմունիստ Սամվել Ղազարյանը։ Նա հորթապահի քսանամյա աշխատանքի փորձ ունի, լավ գիտի զոոտեխնիկական կանոնները, որոնց կիրառումով զգալի հաջողությունների է հասել հորթերի քաշի աճի ուղղությամբ։ Նրա խնամած 25 հորթերից յուրաքանչյուրի քաշի օրվա միջին աճը կազմում է 700—900 գրամ, նախատեսված 500 գրամի փոխարեն։ Ագիտատոր Ղազարյանը սիստեմատիկաբար կարդում է մասնագիտական բրոշյուրներ, հարստացնում է իր գիտելիքները և մատչելի զրույցներ է կազմակերպում ունկնդիրների համար։

Վերջերս նա կոլտնտեսականներին պատմեց կթվորուհի Սոնյա Դավթյանի աշխատանքի մասին, որը ավելի կաթ է ստանում, քան մյուս կթվորուհիները։

— Այդ նրանից է,— ասաց ագիտատորը,— որ Սոնյա Դավթյանը ամենից առաջ խստորեն պահպանում է անասունների կերակրման, կթի և հանգստի ռեժիմը։ Նա կովերը կթում է օրական երեք անգամ, ամեն օր նույն ժամին, կիթն սկսելուց առաջ գոլ ջրով լվանում, շփում է կովի կուրծը։ Նրան ամրացված կովերը գտնվում են մաքուր, լուսավոր շենքում, ուր ամեն օր կատար-

վում է օդափոխություն, անասունները ժամանակին ջրվում ու կերակրվում են։

Անցած 8 ամիսների ընթացքում Ս. Դավթյանը իր խնամած յուրաքանչյուր ֆուրաժային կովից արդեն ստացել է 2.386 լիտր կաթ, տարվա համար նախատեսված 2.333 լիտրի փոխարեն, իսկ առանձին կովերից 200 օրում ստացել է մինչև 4.255 լիտր կաթ։

Կոլտնտեսականները մեծ հետաքրքրությամբ լսեցին Ս. Ղազարյանի զրույցը և շատ նոր բան սովորեցին նրանից։ Այժմ կոլտնտեսության կթվորուհիներ Բադիր և Շաքի Կամբարովաները, Սոնա Մամեդովան, Ասմար Մասմանովան, Աստղիկ Զալաբյանը և ուրիշներ աշխատում են Ս. Դավթյանի օրինակով։

Անասնապահները հետաքրքրությամբ լսեցին նաև ագիտատորներ Ռ. Շահնազարյանի և Գ. Պապյանի զրույցները նոր հնգամյա պլանի մասին։ Խոսելով գյուղատնտեսության և մասնավորապես անասնապահության հետագա զարգացման մասին, նրանք կոլտնտեսությունում եղած օրինակներով բացատրեցին, թե ինչպես ճշտորեն կիրառելով զոոտեխնիկական կանոնները, օգտագործելով առաջավոր անասնապահների հա-



րուստ փորձը, հնարավոր է բարձր մթերատվության հասնել։

Ագիտատոր Ռ. Շահնազարյանը օրինակ բերեց հորթապահ Շամիր Հուսեյինովին, որը թեև երիտասարդ է, սակայն իր հմտությամբ և աշխատանքը կազմակերպելու ունակություններով բոլորովին ետ չի մնում տարեց ու փորձառու անասնապահներից։

Շ. Հուսեյինովը ոչ մի հորթի անկում չի տվել։ Նրա խնամքին հանձնված 25 հորթերից յուրաքանչյուրի քաշի օրվա միջին աճը կազմում է 800 գրամից մինչև մեկ կիլոգրամ։ Ագիտատորը բացատրեց, որ Հուսեյինովը կարողանում է աշխատանքը լավ կազմակերպել։ Նա շատ լավ է ճանաչում արոտավայրերը, անասուններին կերակրելիս հաճախակի փոփոխում է արոտավայրը և միևնույն տեղում մի քանի օր անընդհատ չի կերակրում։ Նա հորթերին ժամանակին լվանում է, ջրում և ամուր կապ պահպանելով անասնաբույժի հետ, կարողանում է ժամանակին կանխել հիվանդությունները։

Ագիտատորի զրույցը հատկապես մեծ տպավորություն թողեց հորթապահ Ջալիլ Մամեդովի վրա, որը Շամիր Հուսեյինովի մրցակիցն է։ Նա խնամում է 22 հորթ և ի պատիվ պարտիայի 19-րդ համագումարի

պարտավորվել է նրանցից յուրաքանչյուրի քաշի օրվա միջին աճը հասցնել 800 գրամի։

Ագիտատորները այդ առաջավորների աշխատանքի ձևերն ու մեթոդներն ուսումնասիրելով և մասսայականացնելով, սիստեմատիկ կերպով բազմապատկում են առաջավոր անասնապահների շարքերը։

Լսելով ագիտատորների զրույցները, կոլտնտեսականները էլ ավելի են ծավալում սոցիալիստական գործարար մրցումը, պայքարում անասնաբուծության հետագա զարգացման, անասունների գլխաքանակի և մթերատվության ավելացման համար։

Ագիտատորների խնդիրն է՝ բացատրական քաղաքական աշխատանքի էլ ավելի ծավալման միջոցով նպաստել ի պատիվ 19-րդ համագումարի ստանձնած պարտավորությունների ժամկետից շուտ կատարմանը։

Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ, ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԸ ԻՋԵՑՆԵԼՈՒ ԵՎ ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿԻ ԱՐՏԱԴՐԱՆՔ ԹՈՂԱՐԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ։

1. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը աշխատանքի արտադրողականության բարձրացման և արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման մասին, որպես սոցիալիստական արդյունաբերության զարգացման կարևոր պայմանի։

2. Արտադրական ծախսերի իջեցումը, արտադրողականության բարձրացումը, հումքի, օժանդակ նյութերի և էլեկտրաէներգիայի խստագույն խնայողությունը արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման հիմնական պայմանն են։

3. Յուրաքանչյուր արտադրական օպերացիայի գերազանց կատարումը հանդիսանում է բարձրորակ արտադրանք թողարկելու հիմքը։

4. Ինչպե՞ս է ծավալվում սոցիալիստական մրցությունը մեր բրիգադում, ցեխում, հերթափոխությու-

նում և ձեռնարկությունում աշխատանքի արտա-
դրողականությունը բարձրացնելու, արդյունաբերա-
կան արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և գերա-
զանց որակի արտադրանք թողարկելու համար։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենին. «Մեծ նախաձեռնություն»: Երկեր,
29-րդ հատոր, էջ 501—533։

Ի. Վ. Ստալին. «Ճառ ՀամԼԿԵՄ Համամիութենա-
կան 5-րդ կոնֆերենցիայում»: Երկեր, 9-րդ հատոր, էջ
216—227։

Ի. Վ. Ստալին. «Նոր իրադրություն— տնտեսական
շինարարության նոր խնդիրներ»: Երկեր, 13-րդ հա-
տոր, էջ 57—89։

«Կոնկրետ ղեկավարել սոցիալիստական մրցությու-
նը»: «Ս. Հ.», 1952 թ. օգոստոսի 7-ի առաջնորդողը։

«Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները
ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգե-
րորդ հնգամյա պլանի վերաբերյալ»: «Ս. Հ.», 1952
թ. օգոստոսի 20-ի համարը։

2. ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԿԱՏԱՐԵՆՔ ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԵՎ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ։

1. Տեխնիկական կուլտուրաների բերքահավաքը ան-
կորուստ և սեղմ ժամկետում ավարտելը, պետական
պարտավորությունը ժամկետից շուտ կատարելը սո-



ցիալիստական գյուղատնտեսության աշխատողների
կարևորագույն խնդիրն է։

2. Պայքարը կորուստների դեմ բերքը հավաքելու և
տեղափոխելու ժամանակ, բերքի խնամքով պահ-
պանությունը հանդիսանում է գյուղատնտեսության
աշխատողների սրբազան պարտքը։

3. Տեխնիկական կուլտուրաների բերքի ժամանա-
կին և անկորուստ հավաքումը հանդիսանում է կոլ-
տնտեսության եկամուտների ավելացման և կոլտն-
տեսականների աշխօրերի արժեքի բարձրացման կա-
րևորագույն պայմանը։

4. Լայնորեն ծավալել սոցիալիստական մրցություն
ի պատիվ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարի՝ բոլոր
գյուղատնտեսական աշխատանքները սեղմ ժամկե-
տում, բարձր որակով և պետական պարտավորություն-
ները ժամկետից շուտ կատարելու համար։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Բամբակի բերքահավաքը»: «Ս. Հ.», 1952 թ. սեպ-
տեմբերի 4-ի առաջնորդողը։

«Լայնորեն ծավալենք մրցությունը կոլտնտեսային
գյուղում»: «Ս. Հ. 1952 թ. սեպտեմբերի 7-ի ա-
ռաջնորդողը։

3. ԺԱՄԱՆԱԿԻՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵՆՔ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՏԱՔ ԵՎ ԿՈՒՇՏ ՁՄԵՌՈՒՄԸ։

1. Հանրային անասունների տաք և կուշտ ձմեռումը

ժամանակին նախապատրաստելը՝ կոլտնտեսականների կարևորագույն խնդիրն է։

2. Հանրային անասունների համար բավարար քանակությամբ կոշտ և հյութալի կեր կուտակելը, յուրաքանչյուր կոլտնտեսությունում ֆուրաժային ֆոնդեր ստեղծելը՝ բոլոր կոլտնտեսականների խնդիրն է։

3. Ժամանակին նախապատրաստել անասնապահական շենքերը։ Անասնապահական շենքերի կառուցման և վերանորոգման աշխատանքներին ակտիվ մասնակցելը բոլոր կոլտնտեսականների գործն է։

4. Ինչպես է ընթանում մեր կոլտնտեսությունում, սովխոզում անասունների ձմեռման նախապատրաստությունը։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Ավելի մեծ ուշադրություն կերի կուտակմանը»: «Ս. Հ.», 1952 թ. սեպտեմբերի 5-ի առաջնորդողը։



## ՆՈՐ ԳՐՔԵՐ



Իտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

